Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ. Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78


# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 34-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## Լ. Պ. ԲԵՐԻԱՅԻ ԶԵԿՈՒՅՈՒՄԸ ՄՈՍԿՎԱՅԻ ՍՈՎԵՏԻ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ 1951 ԹՎԱԿԱՆԻ ՆՈՅԵՄԲԵՐԻ 6-ԻՆ

*Ընկերնե՛ր։*

*Սովետական Միության ժողովուրդները այսօր տոնում են Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձը, ռևոլյուցիա, որը լուսավորված է Լենինի հանճարով, որը մարդկության առջև բացեց նոր, սոցիալիստական աշխարհի ուղին։ Այդ ուղիով առաջընթացի յուրաքանչյուր տարին մեր Հայրենիքին բերում է նոր հաջողություններ։*

*Բոլշևիկյան պարտիայի և Սովետական Կառավարության ամբողջ գործունեությունը Հոկտեմբերյան ռևվոլյուցիայի 33-րդ տարեդարձից մինչև 34-րդ տարեդարձն ընկած ժամանակաշրջանում, ինչպես և մեծ Լենինի մահից հետո անցած բոլոր տարիներին, ընթացել է մեր առաջնորդ ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ։* (Երկարատև ծափահարություններ)։ *Ընկեր Ստալինը հանճարեղ խորաթափանցությամբ պարտիային ու ժողովրդին կողմնորոշում է ներքին և միջազգային կյանքի ամենաբարդ երևույթների մեջ և նշում հետագա զարգացման հեռանկարները։ Ինչպես մեծ, այնպես էլ փոքր գործերի ամենօրյա ղեկավարման ասպարեզում ընկեր Ստալինի անըն-*

պատ եռանդը, Սովետական պետության գլխավոր խնդիրները որոշելու և մեր բոլոր ուժերը դրանց լուծմանն ուղղելու նրա հմտությունը Սովետական Միության ժողովուրդների համար ապահովում են մեծ հաղթանակներ կոմունիզմի կառուցման գործում։ (Ծափահարություններ):

Անցած 1950 թվականը հետպատերազմյան առաջին հնգամյակի ավարտման տարին էր։ Սովետական մարդիկ և արտասահմանի մեր բոլոր բարեկամները ուրախությամբ իմացան, որ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը, որի իրագործման համար մեր ժողովուրդը հարկադրված էր պայքարել պատերազմի պատճառած ծանր վերքերի բուժման դժվարին պայմաններում, կատարված է հաջողությամբ։ Դա, անտարակույս, սովետական ժողովրդի նոր մեծ հաղթանակն է, որի շնորհիվ է՛լ ավելի աճեց մեր սոցիալիստական պետության հզորությունը։ Խաղաղ շինարարության հաջողությունները հանգեցրին աշխատավորների նյութական ու կուլտուրական կենսամակարդակի հետագա բարձրացմանը։

Արտաքին քաղաքականության բնագավառում Սովետական Միությունը առաջվա նման անդուլ պայքար է մղել խաղաղության համար, որն է՛լ ավելի է բարձրացրել նրա միջազգային հեղինակությունը։

Վերջին տարում ամբողջ աշխարհում է՛լ ավելի ակնառու կերպով պարզորոշ դարձան երկու բևեռ՝ ձգողության երկու կենտրոն։ Մի կողմից՝ Սովետական Միությունը, որը գլխավորում է սոցիալիզմի ու դեմոկրատիայի լագերը, որպես նոր պատերազմի կանխման և խաղաղության ամրապնդման համար, իրենց կյանքը անձամբ տնօրինելու՝ ժողովուրդների իրավունքի համար պայքարող բոլոր պրոգրեսիվ ուժերի ձգողության կենտրոն։ Մյուս կողմից՝ Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք գլխավորում են իմպերիալիզմի լագերը, որպես ամբողջ աշխարհի ագրեսիվ և ռեակցիոն



ուժերի ձգողության կենտրոն, որոնք ձգտում են սանձազերծել նոր համաշխարհային պատերազմ ուրիշ ժողովուրդների կողոպտելու և ստրկացնելու համար։

Սոցիալիզմի ու դեմոկրատիայի լագերում անցած տարին հանդիսացավ ուժերի հետագա աճման ու համախմբման, էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման և աշխատավորների կենսամակարդակի բարձրացման տարի։ Նոր դեմոկրատիայի երկրների ժողովուրդները, չին մեծ ժողովուրդը, որոնք իրենց բախտը փրկեցին իմպերիալիստական ստրկացնողների ձեռքից, Սովետական Միության ժողովուրդների եղբայրական օգնությամբ, ուրախ ու վստահորեն կառուցում են նոր, սոցիալիստական կյանք։ (Ծափահարություններ):

Իմպերիալիզմի լագերում անցած տարին հանդիսացավ ներքին ու արտաքին հակասությունների նոր սրման, կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացման և այդ սիստեմի թուլացման, ամբողջ էկոնոմիկան պատերազմի նախապատրաստության հանցավոր նպատակներին ենթարկելու և աշխատավորների կենսական շահերի վրա անողոք հարձակման տարի։

## ԽԱՂԱՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՍՍՌՄ-ՈՒՄ

Մեր երկրի համար 1951 թվականը հանդիսանում է սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա վերելքի տարի։ Բանվորները, կոլտնտեսականները և ինտելիգենցիան, որոնք զբաղված են խաղաղ, ստեղծարար աշխատանքով ի բարօրություն իրենց Հայրենիքի, հսկայական ոգևորությամբ պայքարում են պետական պլանների կատարման ու գերակատարման համար։ Այդ մասին վառ կերպով վկայում են մամուլում հրապարակվող հայրենասիրական նամակներն ընկեր Ստալինին, որոնցում արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի և շինարարության աշխա-

տողները հաղորդում են իրենց արտադրական հաղթա-
նակների և սոցիալիստական մրցության մեջ ստանձնած
նոր պարտավորությունների մասին։

Բոլշևիկյան պարտիան մեր ժողովրդին ոգեշնչում
ու կազմակերպում է աշխատանքային հերոսական սխ-
րագործությունների, նրա ստեղծագործական եռանդն
ուղղում է միասնական նպատակին՝ կոմունիզմի հաղ-
թանակին։ Լենինի—Ստալինի մեծ գաղափարները, օր-
ավուր ավելի խոր են թափանցում աշխատավորների
լայն մասսաների գիտակցության մեջ, բազմապատկե-
լով նրանց ուժերը և լուսավորելով նրանց պայքարի ու
հաղթանակների ուղին։ Դա իր արտացոլումն է գտնում
աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի
մեջ, հասարակության հանդեպ, պետության հանդեպ
իր պարտքը կատարելու գործում ցուցաբերվող անսպառ
նախաձեռնության մեջ։ Դրանումն է մեր հասարակա-
կարգի անպարտելիության աղբյուրը, մեր աշխատանքի
անընդհատ հաջողությունների աղբյուրը։

Այս տարվա 10 ամիսների ընթացքում տնտեսական
շինարարության ասպարեզում կատարված աշխատանքի
արդյունքները ցույց են տալիս, որ 1951 թվականի ժո-
ղովրդա-տնտեսական պլանը կկատարվի և կգերակա-
տարվի։ (Ծափահարություններ): Արդյունաբերական ար-
տադրանքը անցած տարվա համեմատությամբ կավելա-
նա ավելի քան 15 տոկոսով և երկու անգամ կգերազան-
ցի նախապատերազմյան 1940 թվականի արտադրանքը։
Արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդե-
րը, 1950 թվականի համեմատությամբ, կաճեն 12 տո-
կոսով։

Տեխնիկական զինվածության ու բանվորների որա-
կավորման բարձրացումը և արտադրության կազմա-
կերպման բարելավումը հնարավորություն տվին աշխա-
տանքի արտադրողականությունը արդյունաբերության
մեջ, անցած տարվա համեմատությամբ, բարձրացնել
10 տոկոսով։ Ընթացիկ տարում արդյունաբերական ար-
տադրանքի աճի գրեթե երկու երրորդը կստացվի աշխա-



տանքի արտադրողականության բարձրացման հաշվին։
Դա նշանակում է, որ արդյունաբերության արտադրան-
քը մեզ մոտ հիմնականում աճում է ի հաշիվ աշխա-
տանքի արտադրողականության բարձրացման։ Արտա-
դրանքի ինքնարժեքի իջեցումը, ինչպես բազմիցս նշել
է ընկեր Ստալինը, հանդիսանում է արդյունաբերության
աշխատանքի որակի ցուցանիշ, ժողովրդական տնտե-
սության մեջ կուտակումների կարևորագույն աղբյուր-
ներից մեկը։ Դրա հետ մեկտեղ նա հանդիսանում է
գների իջեցման և, հետևաբար, աշխատավորների նյու-
թական բարեկեցության աճման անհրաժեշտ պայման։
Ընթացիկ տարում ինքնարժեքի իջեցման պլանը կգերա-
կատարվի, որը միայն արդյունաբերական արտադրան-
քի գծով կտա 26 միլիարդ ռուբլու խնայողություն։

Այս տարի ծանր և թեթև արդյունաբերության բոլոր
ճյուղերը հասան արտադրության լուրջ ավելացման։

Զգալիորեն աճում է սև մետաղների արտադրությու-
նը։ Անցած տարվա համեմատությամբ, միայն չու-
գունի ձուլման աճը այս տարի կկազմի 2 միլիոն 700
հազար տոննա, պողպատինը՝ մոտ 4 միլիոն տոննա,
գլանվածքինը՝ 3 միլիոն տոննա։ Սովետական Միու-
թյունը այժմ ձուլում է մոտավորապես այնքան պող-
պատ, որքան Անգլիան, Ֆրանսիան, Բելգիան և Շվե-
դիան՝ միասին վերցրած։ (Ծափահարություններ)։ Մեր
մետալուրգները այժմ շատ ավելի արտադրողաբար են
օգտագործում դոմնային ու մարտենյան հնոցները։
Միայն դրա հաշվին 1951 թվականին լրացուցիչ կերպով
կստացվի 1 միլիոն 300 հազար տոննա չուգուն և 1 մի-
լիոն 350 հազար տոննա պողպատ։ Պակաս նշանակա-
լից չէ գունավոր և այլ մետաղների արտադրության այս
տարի ձեռք բերված աճը։

Սև և գունավոր մետալուրգիայում աճել են բանվոր-
ների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ձեռ-
նարկությունների ղեկավարների հիանալի կադրեր, ո-
րոնք լավ գիտեն իրենց գործը և անընդհատ բարելա-
վում են արտադրության տեխնիկան։ Հաջողությամբ

կատարվում է ածխի հանույթի պլանը։ Վերջին մի քանի տարիներին ածխի հանույթի տարեկան աճը միջին հաշվով հավասար է 24 միլիոն տոննայի։ ՍՍՌՄ-ի ածխարդյունաբերությունը այժմ ոչ միայն բավարարում է մեր երկրի պահանջները, այլև ապահովել է անհրաժեշտ ռեզերվների ստեղծումը։

Ածխարդյունաբերության՝ վերջին տարիներս անցկացված տեխնիկական վերազինումը թույլ տվեց լրիվին մեքենայացնել այնպիսի ծանր և աշխատատար աշխատանքներ, ինչպես ածխի հատումը, պոկումը, փոխադրումը ածխաշերտերում, ինչպես նաև ստորերկրյա տրանսպորտը և ածխի բեռնումը երկաթուղային վագոնները։

Սովետական Կառավարությունը և անձամբ ընկեր Ստալինը մշտական հոգատարություն են ցուցաբերում ածխահատների աշխատանքը ամեն կերպ հեշտացնելու և նրանց կյանքի պայմանները բարելավելու նկատմամբ։ Ի տարբերություն կապիտալիստական երկրների, որտեղ ածխահատները ամենից ավելի ճնշված և ընչազուրկ մարդիկ են, Սովետական պետությունում ածխահատները շրջապատված են ուշադրությամբ ու հարգանքով։ Ածխարդյունաբերության բանվորները աշխատավարձի տեսակետից առաջին տեղն են գրավում մյուս ճյուղերի բանվորների մեջ։ Որպես արդյունք մենք ունենք ածխահատների մշտական որակյալ կադրեր, որոնք ապահովում են ածխարդյունաբերության հաջող զարգացումը։

Է՛լ ավելի նշանակալից են մեր նավթարդյունաբերության նվաճումները։ Վերջին մի շարք տարիների ընթացքում նավթի հանույթի տարեկան աճը մեզ մոտ կազմում է 4 և կես միլիոն տոննա։ Ընթացիկ տարում նավթի հանույթի պլանը կգերակատարվի։ Հետախուզական հորատման մեծ ծրագրի իրագործման շնորհիվ բացված են հարուստ նավթահանքեր նոր շրջաններում և մեծ չափով աճել են նավթի հետախուզված արդյունաբերական պաշարները։



Խոշոր մասշտաբների աշխատանքներ են ծավալվել նավթավերամշակման գործարանների կառուցման ու ընդարձակման ուղղությամբ։ Միայն հայրենական առաջնակարգ տեխնիկայով զինված նոր գործարանները, որոնք գործարկվում են այս տարի, կարող են տարեկան վերամշակել 6 միլիոն տոննա նավթ։

Կարելի է վստահորեն ասել, որ ընկեր Ստալինի կողմից դրված խնդիրը՝ նավթի հանույթը հասցնել տարեկան 60 միլիոն տոննայի, կկատարվի ժամկետից շուտ։ (Ծափահարություններ):

Մեծ հաջողություններ են ձեռք բերվել մեր երկրի էլեկտրիֆիկացիայի զարգացման գործում։ Այս տարի կարտադրվի 104 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որ գերազանցում է էլեկտրաէներգիայի արտադրությունը Անգլիայում և Ֆրանսիայում՝ միասին վերցրած։ Էլեկտրաէներգիայի արտադրման միայն տարեկան աճն այս տարի մեզ մոտ կազմում է ավելի քան 13 միլիարդ կիլովատ-ժամ, որը 7 անգամ գերազանցում է էլեկտրաէներգիայի ամբողջ արտադրությունը նախառևոլուցիոն Ռուսաստանում։

Ընթացիկ տարում է՛լ ավելի լայնորեն է ծավալվել նոր էլեկտրակայանների շինարարությունը։ 1951 թվականին գործարկվող էլեկտրակայանների ու նոր ագրեգատների ընդհանուր կարողությունը կկազմի մոտ 3 միլիոն կիլովատ, որը մոտավորապես հավասար է 5 այնպիսի խոշոր էլեկտրակայանների, ինչպես Դնեպրոգէսը։

Տարեցտարի աճում է մեր քիմիական արդյունաբերությունը։ Զգալիորեն ավելացել է քիմիական պարարտանյութերի արտադրությունը և 1950 թվականի համեմատությամբ համարյա կրկնապատկվել է օրգանական նոր թունաքիմիկատների թողարկումը գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների ու մոլախոտերի դեմ պայքարելու համար։ Սինթետիկ կաուչուկի արտադրությունն անցյալ տարվա համեմատությամբ ավելանում է 20 տոկոսով։ Քիմիական արդյունաբերության աշխատողները, սովետական գիտնականների հետ սերտ

համագործակցությամբ, լուրջ հաջողությունների են հասել քիմիայի ասպարեզում խոշոր տեխնիկական պրոբլեմները լուծելու գործում։

Մեր տնտեսական զարգացումը անկարելի կլիներ առանց հայրենական մեքենաշինության՝ ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական պրոգրեսի հիմքի անընդհատ աճի ու կատարելագործման։

Մեքենաշինության ընդհանուր արտադրանքը, անցյալ տարվա համեմատությամբ, ավելանում է 21 տոկոսով։ Էլեկտրակայանների համար էներգետիկ սարքավորման ամենագլխավոր տեսակների թողարկումը աճում է 2—3 անգամ։ Այս տարի մենք արտադրում ենք շոգետուրբին 150 հազար կիլովատ կարողությամբ։ Այդպիսի կարողությամբ տուրբին ստեղծվում է աշխարհում առաջին անգամ, որ վկայում է սովետական գիտության և տեխնիկայի հասունության մասին։ 1950 թվականի համեմատությամբ համարյա կրկնապատկվում է նավթային ապարատուրայի արտադրությունը։ Մեքենաշինական արդյունաբերությունը 1951 թվականին թողարկում է մեքենաների ու մեխանիզմների ավելի քան 400 նոր տիպեր։

Մեր մեքենաշինարարներն իրավունք ունեն հպարտանալու ժամանակակից ամենաբարդ ապարատուրայի, գեոֆիզիկական, էլեկտրամեխանիկական, էլեկտրոնային, էլեկտրավակուումային և այլ ճշգրիտ գործիքների արտադրության մեջ ձեռք բերած հաջողություններով։

Արդյունաբերության հաջող զարգացման և գյուղատնտեսական հումքի արտադրության աճի շնորհիվ զգալիորեն ընդլայնվում է լայն սպառման ապրանքների թողարկումը։ Այս տարի ընկեր Ստալինի նախաձեռնությամբ Կառավարությունը միջոցներ է ձեռք առել ավելացնելու պարենային և արդյունաբերական ապրանքների արտադրությունը տարեկան պլանով նախատեսվածից դուրս։ Դրա շնորհիվ բնակչությունը 1950 թվականի համեմատությամբ կստանա ավելի շատ արդյունաբերական և պարենային ապրանքներ. գործվածքներ՝



24 տոկոսով, տրիկոտաժ՝ 35 տոկոսով, կոշկեղեն՝ 12 տոկոսով, միս և մսամթերքներ՝ 20 տոկոսով, ձկնամթերքներ՝ 8 տոկոսով, բուսական յուղ՝ 35 տոկոսով, կենդանական յուղ՝ 8 տոկոսով, շաքար՝ 24 տոկոսով, թեյ՝ 38 տոկոսով ավելի. կուլտուր-կենցաղային ապրանքներ. հեծանիվներ՝ համարյա 2 անգամ, ռադիոընդունիչներ՝ 25 տոկոսով, ժամացույցներ՝ 11 տոկոսով, լուսանկարչական ապարատներ՝ 39 տոկոսով, կարի մեքենաներ՝ 28 տոկոսով, կահույք՝ 44 տոկոսով ավելի։ Մեր արդյունաբերությունն արդեն սկսում է մասսայական կարգով թողարկել տելեվիզորներ, տնային սառցարաններ, լվացքի և այլ մեքենաներ տնային գործածության համար։

Ինչպես տեսնում եք, մեր արդյունաբերությունն ունի լուրջ հաջողություններ։ Բայց մենք չպետք է մոռանանք նաև առանձին ձեռնարկությունների աշխատանքում եղած թերությունների մասին, ձեռնարկություններ, որոնք արտադրությունը վատ կազմակերպելու և առաջավոր տեխնիկան թույլ օգտագործելու հետևանքով չեն կատարում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և ինքնարժեքն իջեցնելու առաջադրանքները, թույլ են տալիս հումքի ու վառելիքի գերածախս, ինչպես նաև կորուստներ խոտանի հետևանքով։ Այդ թերությունների վերացումը հնարավորություն կտա լրացուցիչ կերպով ստանալու զգալի խնայողություն։

Առանձին ձեռնարկություններ, կատարելով և գերակատարելով համախառն արտադրանքի պլանը, միշտ չէ, որ կատարում են արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության՝ պետական պլանով սահմանված առաջադրանքները։ Այդ ձեռնարկությունների ղեկավարները, ըստ երևույթին, ուզում են թեթևացնել իրենց աշխատանքը և թողարկում են այնպիսի արտադրանք, որն ավելի քիչ ջանքեր և գլխացավանք է պահանջում։ Ժամանակն է, որպեսզի նրանք հասկանան, որ պետության համար հարկավոր է պլանի ոչ թե ամեն մի կատարում և գերակատարում, այլ միայն այնպիսին,

որը ժողովրդական տնտեսությունն ապահովում է նրան հարկավոր արտադրանքով։

Մեր սոցիալիստական տնտեսության մեջ ամեն մի ղեկավար, լինի նա մեծ թե փոքր աշխատանքում, պետք է պետության շահերը դասի ամեն բանից բարձր և խստիվ պահպանի պետական կարգապահությունը։ Պետք է վճռականապես վերացնել առանձին տնտեսավարների մոտ դեռևս նկատվող նեղ-գերատեսչական մոտեցումը գործին, որ վնաս է հասցնում մեր պլանային տնտեսությանը։

Ընթացիկ տարին նշանավորվեց մեր սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքով։ Գյուղատնտեսության աճած տեխնիկական հագեցվածությունը և աշխատանքների ավելի լավ կազմակերպումը հնարավորություն տվին այս տարի հացահատիկային կուլտուրաների բերքահավաքն անցկացնել ավելի կարճ ժամկետներում և զգալիորեն կրճատել հացահատիկի կորուստները։ Կոլտնտեսությունները և սովխոզները հավաքեցին բարձրորակ հացահատիկի բերք, ժամկետից շուտ կատարեցին պետությանը հացահատիկի հանձնման պարտավորությունները և ապահովեցին սերմֆոնդերի առանձնացումը։ Վերջին մի քանի տարիների ընթացքում հացահատիկի համախառն բերքն ամեն տարի գերազանցում է 7 միլիարդ փթից։

Բամբակ և շաքարի ճակնդեղ այս տարի մենք կհավաքենք ավելի շատ, քան անցյալ տարի։ Մեր երկիրն այժմ արտադրում է ավելի շատ բամբակ, քան իրենց բամբակագործությամբ հայտնի Հնդկաստանը, Պակիստանը և Եգիպտոսը՝ միասին վերցրած։

Կոլտնտեսությունները և սովխոզները հաջողությամբ պայքարում են սոցիալիստական անասնաբուծության զարգացման ստալինյան պլանն իրագործելու համար։ Հանրային կոլտնտեսային անասնաբուծությունը, սովխոզայինի հետ միասին, անասունների ընդհանուր գլխաքանակի գծով դարձել է գերակշռող։ Կարևո-



րագույն խնդիրը անասնաբուծության ասպարեզում շարունակում է մնալ կերի բազայի ընդլայնումը։

Գյուղատնտեսությունն ամեն տարի պետությունից ստանում է մեծ քանակությամբ նորագույն մեքենաներ։ Այս տարի նա կստանա 137 հազար տրակտոր՝ փոխադրած 15-ուժանոցի, 54 հազար հացահատիկի հավաքման կոմբայն, դրանցից 29 հազարը՝ ինքնագնաց, ինչպես նաև 2 միլիոն գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ։ Մեծ աշխատանքներ են կատարվում գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման ուղղությամբ։ Այդ ամենը հնարավորություն է տալիս է՛լ ավելի մեքենայացնելու գյուղատնտեսական հիմնական աշխատանքները, հեշտացնելու կոլտնտեսականների աշխատանքը և բարձրացնելու նրա արտադրողականությունը։ Մեքենա-տրակտորային կայանները ներկայումս կոլտնտեսություններում կատարում են բոլոր դաշտային աշխատանքների ավելի քան երկու երրորդը։ 1951 թվականին կոլտնտեսություններում մեքենայացվել է համարյա ամբողջ հերկը, ցանքի երեք քառորդը կատարվում է տրակտորային շարքացաններով, հացահատիկային կուլտուրաների ամբողջ տարածության ավելի քան 60 տոկոսը հավաքվել է կոմբայններով։ Համարյա լիովին մեքենայացվել են գյուղատնտեսական բոլոր հիմնական աշխատանքները սովխոզներում։

Անշեղորեն աճում է կոլտնտեսությունների հանրային հարստությունը։ Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը միայն անցյալ տարվա ընթացքում ավելացել են 11 տոկոսով։ Անհրաժեշտ է, որպեսզի կոլտնտեսականներն այսուհետև ևս ամեն կերպ ամրապնդեն և զարգացնեն հանրային տնտեսությունը՝ կոլտնտեսությունների հետագա վերելքի և կոլտնտեսականների նյութական բարեկեցության աճի այդ հիմքը։

Արդյունաբերության և գյուղատնտեսության հետ միասին աճում է նաև մեր երկաթուղային, գետային ու ծովային տրանսպորտը։ Ընթացիկ տարում երկաթուղիների բեռնաշրջանառությունն աճում է 11 տոկո-

սով։ Ի դեպ, աճի այդ 11 տոկոսը համարյա հավասար է միասին վերցրած Անգլիայի և Ֆրանսիայի երկաթուղիների ամբողջ տարվա բեռնաշրջանառությանը։ (Ծափահարություններ)։ Բեռների փոխադրումները գետային տրանսպորտով ավելանում են 12 տոկոսով և ծովային տրանսպորտով՝ 7 տոկոսով։ Մեր տրանսպորտայինների բազմամարդ բանակի հետագա խնդիրը դեռևս մնում է վագոնների շրջապտույտի արագացումը և երկաթուղային, գետային ու ծովային տրանսպորտի ամբողջ շարժական կազմի ավելի լավ օգտագործումը։

Մեր երկիրն իրագործում է շինարարական լայն ծրագիր։ Կապիտալ շինարարության մասշտաբներն աճում են տարեցտարի։ Պետական կապիտալ ներդրումների ծավալը ընթացիկ տարում ավելի քան 2 և կես անգամ գերազանցում է նախապատերազմյան 1940 թվականի կապիտալ ներդրումների ծավալը։

Շինարարական կազմակերպություններն ստանում են ավելի և ավելի շատ մեքենաներ ու մեխանիզմներ, բարելավվել է նրանց ապահովումը շինանյութերով։ 1951 թվականին մեծ չափով ավելացվում է էքսկավատորների, սկրեպերների, բուլդոզերների առկա պարկը։ Ցեմենտի արտադրությունը տարվա ընթացքում աճում է 2 միլիոն տոննայով։ Զգալիորեն բարելավվում է աղյուսի, շիֆերի, չուգունե և կերամիկային խողովակների ու մյուս շինանյութերի թողարկումը։

Մեր կառուցողները որոշ հաջողությունների են հասել շինարարության արժեքի իջեցման ու նրա ժամկետների կրճատման գործում։ Սակայն նրանք դեռ շատ բան պետք է անեն։ Հարկավոր է, ամենից առաջ, պատշաճ կարգ մտցնել շինարարական հրապարակներում աշխատանքները կազմակերպելու գործում, ավելի արտադրողաբար օգտագործել շինարարական մեխանիզմները, ավելի լավ կազմակերպել աշխատանքը և խիստ կրճատել վերադիր ծախսերը։ Պետք է վերացնել նախագծերում ու նախահաշիվներում դեռևս գոյություն ունեցող շռայլումները, որոնք թանկացնում են շինարարությունը։



Մեր շինարարության մեջ, ինչպես ձեզ հայտնի է, հատուկ տեղ են գրավում Վոլգայի, Դոնի, Դնեպրի և Ամու-Դարյայի վրա ստեղծվող խոշորագույն հիդրոտեխնիկական կառուցումները։ Այդ կառուցումները աշխարհում հավասարը չունեն ինչպես իրենց չափերով, այնպես էլ շինարարության տեմպերով։ Կառավարության կողմից սահմանված 1951 թվականի աշխատանքների պլանները բոլոր կառուցումներում հաջողությամբ կատարվում ու գերակատարվում են։

Արդեն 1952 թվականին շահագործման է հանձնվում այդ կառուցումներից առաջինը՝ Վոլգա—Դոն ջրային ուղին։ Այդ ուղու բացումով ՍՍՌՄ եվրոպական մասի բոլոր ծովերը կմիացվեն միասնական տրանսպորտային մեկ սիստեմի մեջ։ (Ծափահարություններ)։

Այդ վիթխարի հիդրոտեխնիկական կառուցումների իրագործման շնորհիվ կլուծվեն խոշորագույն ժողովրդա-տնտեսական խնդիրներ։ Միայն նոր էլեկտրակայանները տարեկան կտան 22 և կես միլիարդ կիլովատ-ժամ էժան էլեկտրաէներգիա, որ համարյա հավասար է Իտալիայի էլեկտրաէներգիայի տարեկան ամբողջ արտադրությանը։ Ոռոգվող և ջրովի դարձվող տարածությունների ընդլայնումը հնարավորություն կտա լրացուցիչ կերպով արտադրել 3 միլիոն տոննա բամբակի հումք, որ կազմում է ԱՄՆ-ում բամբակի տարեկան միջին արտադրության ավելի քան մեկ երրորդը, կես միլիարդ փութ ցորեն, 30 միլիոն փութ բրինձ և 6 միլիոն տոննա շաքարի ճակնդեղ։ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը այդ շրջաններում կավելանա 2 միլիոնով և ոչխարներինը՝ 9 միլիոնով։

Այդ կառուցումների շինարարությունն սկսվել է ընկեր Ստալինի նախաձեռնությամբ. Նա անդուլ հոգատարություն է ցուցաբերում մեր Հայրենիքի բարօրության ու ծաղկման, սովետական մարդկանց աշխատանքի հեշտացման ու նրանց կյանքի պայմանների բարելավման նկատմամբ։ Ընկեր Ստալինի նախաձեռ-

նությունը չերմ պաշտպանություն գտավ մեր ամբողջ
ժողովրդի կողմից, որն այդ կառուցումներն իրավամբ
անվանեց կոմունիզմի ստալինյան մեծ կառուցումներ։
(Երկարատև ծափահարություններ):
Ի հակադրություն կապիտալիզմի երկրների, որտեղ
արտադրությունը ծառայում է մի բուռ շահագործող-
ների շահույթի և հարստացման նպատակներին, մեր
երկրում աշխատավորների շահերը դրված են ամբողջ
ժողովրդական տնտեսության զարգացման հիմքում։
Տարեցտարի աճում է ազգային եկամուտը և այդ հի-
ման վրա բարձրանում են բանվորների, ծառայողների
ու գյուղացիների եկամուտները։ 1951 թվականին
ՍՍՌՄ ազգային եկամուտը, 1950 թվականի համե-
մատությամբ, աճում է 12 տոկոսով։
Սովետական Կառավարությունը վարում է մասսա-
յական սպառման ապրանքների գների սիստեմատիկ
իջեցման քաղաքականություն։ Այս տարվա մարտին
իրագործվեց պարենային և արդյունաբերական ապ-
րանքների պետական մանրածախ գների նոր, վերջին
տարիների ընթացքում չորրորդ իջեցումը, որն ապա-
հովեց բանվորների ու ծառայողների ռեալ աշխատա-
վարձի հետագա աճը և էժանացված արդյունաբերա-
կան ապրանքներ գնելու համար գյուղացիների ծախ-
սերի կրճատումը։
Այս տարի ապրանքաշրջանառության ընդհանուր
ծավալը, անցյալ տարվա համեմատությամբ, աճում է
15 տոկոսով։ Սակայն պետք է նշել, որ քիչ չեն թերու-
թյունները առևտրական կազմակերպությունների աշ-
խատանքում։ Դեռևս թույլ է ուսումնասիրվում բնակ-
չության պահանջը, սխալներ են թույլ տրվում մարզե-
րը և ռեսպուբլիկաները առանձին ապրանքներ ուղար-
կելու գործում, միշտ չէ, որ հմտորեն են օգտագործ-
վում ապրանքային ռեսուրսները։ Առևտրի աշխատող-
ները պետք է լրջորեն բարելավեն սովետական սպառո-
ղի սպասարկումը։
Պարտիան և Կառավարությունը մշտական հոգա-
տարություն են ցուցաբերում աշխատավորների բնա-



կարանային պայմանները բարելավելու նկատմամբ։
Ընթացիկ տարում քաղաքներում և բանվորական
ավաններում շահագործման են հանձնվում բնակելի
տներ մոտ 27 միլիոն քառակուսի մետր ընդհանուր
տարածությամբ, իսկ գյուղական վայրերում կոլտնտե-
սականները կկառուցեն 400 հազար բնակելի տուն։
Չափազանց բերկրալի է այն, որ ժողովրդի բարե-
կեցության աճի և սովետական առողջապահության
հաջողությունների շնորհիվ մեր երկրում մահացու-
թյունը, նախապատերազմյան 1940 թվականի համե-
մատությամբ, իջել է երկու անգամ (ծափահարություն-
ներ), և էլ ավելի մեծ չափով կրճատվել է երեխաների
մահացությունը։ ՍՍՌՄ բնակչության տարեկան զուտ
աճը արդեն մի քանի տարիներ շարունակ գերազանցում
է բնակչության 1940 թվականի աճը և կազմում է ավելի
քան 3 միլիոն մարդ։ (Ծափահարություններ):
Այն ժամանակ, երբ կապիտալիզմի լագերում իմ-
պերիալիստական մարդակերներն զբաղված են մարդ-
կության լավագույն մասը ոչնչացնելու և ծնունդը կըր-
ճատելու զանազան «գիտական» միջոցների հայտնա-
գործումով, մեզ մոտ, ինչպես ասել է ընկեր Ստալինը,
ամենաարժեքավոր կապիտալը մարդիկ են, իսկ մարդ-
կանց բարեկեցությունն ու երջանկությունը կազմում
են պետության գլխավոր հոգսը։
Տնտեսության և կուլտուրայի բոլոր ճյուղերի հա-
մար մասնագետների կադրերի պատրաստման ու
դաստիարակության հարցերը միշտ կարևոր տեղ են
գրավել ու գրավում են մեր պետության միջոցառում-
ների սիստեմում։ Բարձրագույն ուսումնական հաստա-
տություններում և տեխնիկումներում ընթացիկ տա-
րում սովորում է 2 միլիոն 720 հազար մարդ։ Միմիայն
1951 թվականին բարձրագույն ուսումնական հաստա-
տություններն ու տեխնիկումներն ավարտեցին 463
հազար երիտասարդ մասնագետներ։ Ներկայումս մեր
երկրում աշխատում են լրիվ բարձրագույն կրթություն
կամ տեխնիկական միջնակարգ կրթություն ունեցող 5
միլիոն մասնագետներ և այդ թվից ոչ պակաս որակյալ

մասնագետ-պրակտիկներ, որոնք աճել են արտադրության մեջ և ուսուցում են անցել դասընթացներում, առանց աշխատանքից կտրվելու։

Մեր բոլոր նվաճումների մեջ մեծ դեր է պատկանում սովետական գիտությանը։ Վերջին ժամանակներս մեր գիտնականները լուծեցին ժողովրդատնտեսական և պաշտպանական նշանակություն ունեցող մի շարք կարևորագույն գիտական պրոբլեմներ։ Գիտության մի շարք ճյուղերում սովետական գիտնականներն առաջին տեղը գրավեցին համաշխարհային գիտության զարգացման ասպարեզում։ Վերջին ժամանակներս նշանակալից է արտադրության աշխատողների հետ սովետական գիտնականների համագործակցության լուրջ ընդարձակումն ու խորացումը։ Դա ոչ միայն նպաստում է արտադրության մեջ գիտության նվաճումների ավելի լավ արմատավորմանը, այլև գիտությունը հարստացնում է արդյունաբերության, տրանսպորտի և գյուղատնտեսության նորարարների բազմամարդ բանակի փորձով և ստեղծագործական մտքով։

Մեր երկրում կուլտուրական վերելքի ամենից ավելի վառ արտահայտություններից մեկն է գրականության և արվեստի ծաղկումը։ Կոնկրետ կերպարների մեջ մարմնավորելով կոմունիզմի մեծ գաղափարները, դրանք իրենցից ներկայացնում են մասսաներին կոմունիզմի ոգով, սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու հզոր միջոց։ Այս տարին, ինչպես և նախորդ տարիները, նշանավորվեց արվեստի և գրականության գեղարվեստորեն բարձր մի շարք երկերի երևան գալով, որոնք ճշմարտացի արտացոլում են սովետական մարդկանց բարոյական բարձր հատկությունները, նրանց կյանքը և պայքարը Հայրենիքի հզորության հետագա աճման համար, խաղաղության ու ժողովուրդների միջև բարեկամության համար, ամբողջ աշխարհում մարդկանց երջանկության համար։

Երկրի հիմնական ուժերն ու ռեսուրսներն ուղղելով



ժողովրդական տնտեսության և կուլտուրայի հետագա վերելքին, պարտիան և Կառավարությունը աչքաթող չեն անում պաշտպանության ամրապնդման անհրաժեշտությունը։ Պատմական փորձը ամբողջովին հաստատեց ընկեր Ստալինի բազմիցս արած նախազգուշացումը այն մասին, որ հաղթանակած սոցիալիզմի երկիրը, գտնվելով կապիտալիստական շրջապատման մեջ, պետք է մշտապես պատրաստ լինի իմպերիալիստական տերությունների հնարավոր ագրեսիային հակահարված տալու համար։ Այս տարի, ինչպես և միշտ, պարտիան և Կառավարությունը ամեն ինչ անում էին, որպեսզի հերոսական սովետական ժողովուրդը, որն ստեղծագործական աշխատանքի պաթոսով բարձրացնում է կոմունիզմի մեծ շենքը, կարողանա այսուհետև ևս չվախենալ իր երկրի բախտի համար։ (Ծափահարություններ): Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը, որոնք օժտված են աշխարհին հայտնի չգերազանցված բարոյական ու մարտական հատկություններով, ունեն ժամանակակից սպառազինության բոլոր տեսակները, որպեսզի խորտակիչ հարված հասցնեն ամեն մեկին, ով, չնայելով պատմության համոզիչ դասերին, նորից կհամարձակվի հարձակվել մեր Հայրենիքի վրա։ (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Ինչպես հայտնի է, մեր հաղթանակների վճռական պայմանն են հանդիսանում Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ծնունդը հանդիսացող մեր հասարակական և պետական կարգի առավելությունները։ Այդ առավելությունների գլխավոր արտահայտություններից մեկն այն է, որ սովետական հասարակակարգը առաջին անգամ արձակեց և ազատեց ժողովրդի մեծ ուժերը, կյանքի կոչեց կապիտալիստական շահագործումից ազատագրված մասսաների հզոր ակտիվությունն ու ստեղծագործական անսպառ նախաձեռնությունը։ Հենց մասսաների այդ ակտիվությունն ու նախաձեռնությունն էլ հանդիսանում են կոմունիզմի անպարտելի ուժերի կարևորա-

գույն աղբյուրը։ Ժողովրդի այդ ստեղծագործական ակտիվությունը մոբիլիզացնող ու կազմակերպող պարտիական և սովետական օրգանների, ինչպես նաև հասարակական կազմակերպությունների աշխատանքի հետագա բարելավումը առաջվա նման մնում է պարտիայի և Կառավարության մշտական հոգատարության առարկան։

Սովետական մարդիկ իրենց աշխատանքում անշեղորեն հաջողություններ են ձեռք բերում, որովհետև նրանց համար խորթ են գոռոզությունն ու ինքնագոհությունը, որովհետև նրանք երբեք չեն հանգստանում ձեռք բերածով և իրենց նվաճումները գլխավորապես չափում են ապագայի մեծ խնդիրների լույսի տակ։ Քննադատությունն ու ինքնաքննադատությունը, ինչպես մեզ սովորեցնում է ընկեր Ստալինը, հանդիսանում են մեր զարգացման օրենքը, ամեն տեսակ լճացման և անշարժության, մեր հաղթական առաջընթացը խանգարող ամբողջ հնի, մեռնողի հաղթահարման վճռական միջոցը։ Մասսաների գիտակցականության մակարդակը, կադրերի գաղափարական-տեսական պատրաստությունը մեծ չափով որոշում են բոլշևիկյան քննադատության ու ինքնաքննադատության գործունությունը։ Ինչպես և միշտ, մեր պարտիայի ուշադրության կենտրոնում են գտնվում մասսաների կոմունիստական դաստիարակության հարցերը, կադրերի գաղափարական-քաղաքական մակարդակի հետագա բարձրացման, նրանց կողմից Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի մեծ ուսմունքին տիրապետելու հարցերը։

Կոմունիստական շինարարության գործում մեր նոր հաջողություններին զուգընթաց, անշեղորեն աճում և ամրապնդվում են սոցիալիստական հասարակության զարգացման շարժիչ ուժերը։ Մեր երկրի բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի կյանքի ու աշխատանքի յուրաքանչյուր օրը տալիս է հայրենասիրության, սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության և ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության նոր



վառ արտահայտություններ։ Մեր երկրի ժողովուրդների կամքի և ձգտումների անխորտակելի միասնությունը, նրանց նյութական ու բարոյական ուժերի միասնությունը մեր Հայրենիքի հզորության գլխավոր հիմքերից մեկն է։ Հենց այդ միասնության շնորհիվ մեր պետությունը ի վիճակի է լուծելու այնպիսի մեծ խնդիրներ, որոնց մասին առաջ երազել անգամ չէին կարող մարդկության ամենահամարձակ մտքերը։

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Մեր երկրում խաղաղ շինարարության հսկայական թափը պերճախոս կերպով վկայում է Սովետական Միության արտաքին քաղաքականության խաղաղ բնույթը և մերկացնում է զրպարտիչներին, որոնք շաղակրատում են մեր Կառավարության ագրեսիվ դիտավորությունների մասին։

«Ոչ մի պետություն,— ասում է ընկեր Ստալինը,— այդ թվում և Սովետական պետությունը, չի կարող ամբողջ թափով ծավալել քաղաքացիական արդյունաբերությունը, սկսել Վոլգայի, Դնեպրի, Ամու-Դարյայի հիդրոկայանների նման մեծ կառուցումներ, որոնք պահանջում են տասնյակ միլիարդների բյուջետային ծախսեր, շարունակել մասսայական սպառման ապրանքների գների սիստեմատիկ իջեցման քաղաքականությունը, որը նույնպես պահանջում է տասնյակ միլիարդների բյուջետային ծախսեր, հարյուրավոր միլիարդներ ներդնել գերմանական օկուպանտների ավերած ժողովրդական տնտեսության վերականգնման գործում և դրա հետ միասին, դրա հետ միաժամանակ, բազմապատկել իր զինված ուժերը, ծավալել ռազմական արդյունաբերությունը։ Դժվար չէ հասկանալ, որ այդպիսի անխոհեմ քաղաքականությունը կհանգեցներ պետության սնանկացմանը»։

Սովետական պետության խաղաղասիրական քաղաքականությունը Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի ծնունդն է։ Սովետական իշխանության ավելի քան երեսնամյա պատմությունը ցույց է տալիս, որ Հոկտեմբերյան ռևոլյուցիան ստեղծագործման, նոր, կոմունիստական հասարակության պլանաչափ կառուցման ռևոլյուցիա է։ Թշնամիների կողմից մեր վզին փաթաթված պատերազմները միայն խանգարել են մեր մեծ գործին։

Ընկեր Ստալինը պարտիայի 14-րդ համագումարում իր զեկուցման մեջ սպառիչ հստակությամբ սահմանել է Սովետական Կառավարության արտաքին քաղաքականությունը. «Մեր կառավարության քաղաքականության, արտաքին քաղաքականության հիմքը կազմում է խաղաղության իդեան։ Պայքար հանուն խաղաղության, պայքար ընդդեմ նոր պատերազմների, այն բոլոր քայլերի մերկացում, որոնք կատարվում են նոր պատերազմ նախապատրաստելու նպատակով... այս է մեր խնդիրը»։

Չի եղել Սովետական Միության մասնակցությամբ տեղի ունեցած միջազգային ոչ մի կոնֆերանս կամ խորհրդակցություն, որտեղ Սովետական Կառավարության ներկայացուցիչները արած չլինեն կոնստրուկտիվ առաջարկներ միջազգային կոնֆլիկտները կանխելու և խաղաղությունն ու անվտանգությունը ապահովելու նպատակով։ Բայց այս ուղղությամբ մեր ջանքերը մեծ մասամբ հանդիպել են մի շարք բուրժուական պետությունների կառավարող շրջանների ուղղակի դիմադրությանը։ Դրությունը քիչ բանով փոխվեց նաև երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, որից, թվում էր թե, շատ երկրների պետական գործիչներ պետք է հարկ եղած դասերը վերցնեին։

Ժողովուրդները հսկայական զոհաբերությունների ու զրկանքների դիմեցին ագրեսիվ ֆաշիստական բլոկի ջախջախման գործում, հուսալով, որ հաղթանակից հետո նրանց համար կապահովվեն խաղաղ զարգացման պայմաններ։ Դեռևս երկրորդ համաշխարհային պատերազմի



եռուն պահին ընկեր Ստալինը նախազգուշացնում էր, որ բավական չէ շահել պատերազմը, հարկավոր է նաև ապահովել կայուն ու տևական խաղաղությունը ժողովուրդների միջև։ Բայց ճակատամարտերի դաշտերում միլիոնավոր զոհերի արյունը դեռ չսառած՝ ամերիկա-անգլիական իմպերիալիստները սկսեցին նյութել նոր պատերազմ։ Պատերազմից անմիջապես հետո ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի կառավարող շրջանները կանգնեցին պատերազմի ժամանակ մեծ տերությունների միջև ձեռք բերված կարևորագույն համաձայնագրերի ուղղակի խախտման ուղու վրա, միջազգային համագործակցության քայքայման և ագրեսիվ բլոկի կազմակերպման ուղու վրա, որպեսզի ժողովուրդներին նետեն նոր համաշխարհային սպանդի աղետների մեջ։

Հարկ չկա այստեղ թվարկել բոլորին հայտնի փաստերը։ Բավական է նշել, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները բացահայտորեն վերականգնում են պատերազմի այն երկու օջախները՝ Արևմուտքում՝ Գերմանիայի գոտում և Արևելքում՝ Ճապոնիայի գոտում, որոնց լիկվիդացումը անցած պատերազմում ազատասեր ժողովուրդներին նստեց միլիոնավոր մարդկային կյանքեր և նրանցից պահանջեց նյութական վիթխարի զոհողություններ ու անլուր տառապանքներ։

Վերջին ժամանակներս ուժեղ տեմպերով անց է կացվում Արևմտյան Գերմանիայի վերառազմականացումը՝ այդ գործի մեջ ներգրավելով պատերազմի հիտլերյան հանցագործներին։ Ընդ որում, հակառակ առողջ բանականության, գերմանական միլիտարիզմի այդ վերականգնման գործում ամենից ավելի ակտիվ մասնակցություն են ունենում Ֆրանսիայի այժմյան կառավարողները, որի ժողովուրդը մարդկային մեկ սերնդի ընթացքում երկու անգամ ապրել է գերմանական ագրեսիայի բոլոր սարսափները։ Հեշտ է հասկանալ, թե ինչու ամերիկյան պարագլուխները ավելի հարմար են գտնում ֆրանսիացի հաճոյակատար մարդկանց ձեռքով իրագործել իրենց պլանները Գերմանիայի նկատմամբ՝ «Շումանի պլանի», «Պլևենի պլանի» անվան տակ և այլն։ Բայց

Եվրոպայի ժողովուրդները չեն կարող չգիտակցել, որ դա լուրջ սպառնալիք է ստեղծում խաղաղությանը։ Սովետական Կառավարությունը չէր կարող անցնել ոչ միայն Պոտսդամի համաձայնագրի, այլև դաշինքի ու փոխադարձ օգնության ֆրանս-սովետական 1944 թվականին կնքված պայմանագրի կոպիտ խախտման այդ փաստի կողքով։ Նա հատուկ նոտաներում Ֆրանսիայի կառավարությանը հայտարարեց նրա այժմյան քաղաքականության վտանգավոր հետևանքների և ստեղծված դրության համար նրա պատասխանատվության մասին։

Նորերս ամերիկա-անգլիական բլոկն անցկացրեց Ճապոնիայի հետ կնքված այսպես կոչված հաշտության պայմանագիր, իսկ ԱՄՆ-ը, բացի դրանից, նրա հետ կնքեց ռազմական համաձայնագիր, բացահայտորեն ձեռնամուխ լինելով ճապոնական միլիտարիզմի վերականգնմանը։ Համաշխարհային հասարակական կարծիքը զայրացած է այն բանից, որ Ճապոնիայի հետ կընքված հաշտության պայմանագրին մասնակցել մերժեցին չին մեծ ժողովրդին, որն ամենքից ավելի շատ է տուժել ճապոնական ագրեսիայից և հսկայական ավանդ է մուծել ճապոնական իմպերիալիզմի ջախջախման գործում, այնինչ ամերիկացիները ի ցույց են դնում Հոնդուրասի, Կոստա-Րիկայի ու նման մանր, կիսագաղութային պետությունների ներկայացուցիչների ստորագրությունները, որոնք ոչ միայն չեն մասնակցել իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախմանը, այլև հանձինս իրենց բազմաթիվ վաճառականների ու կալվածատերերի, հարստացել են նրա դեմ մղված պատերազմում։ Ոչ ոքի համար գաղտնիք չէ, որ Ճապոնիայի հետ կնքված այդ սեպարատ պայմանագիրը ծառայում է ոչ թե խաղաղության նպատակներին, այլ պատերազմի նախապատրաստման նպատակներին։ Սովետական Միությունը, որը բազմիցս պնդել է իսկական, արդարացի հաշտության պայմանագիր կնքել Ճապոնիայի հետ Կահիրեի ու Պոտսդամի դեկլարացիաների և Յալթայի համաձայնագրի հիման վրա, կդավաճաներ խաղաղության իր տրադիցիոն քաղաքականությանը, եթե իր ստո-



րագրությունը դներ այդպիսի «հաշտության» պայմանագրի տակ։ Այդ պայմանագրի արժեքն ընկնում է նաև նրանով, որ նրա կնքմանը չի մասնակցել իր մեծությամբ ու նշանակությամբ Ասիայում երկրորդ պետությունը՝ Հնդկաստանը։

Գերմանական և ճապոնական միլիտարիզմի վերականգնման ոգեշնչողները, ինչպես երևում է, չեն ուզում հաշվի նստել ո՛չ գերմանական, ո՛չ էլ ճապոնական ժողովրդի հետ, որոնք մյուս ժողովուրդներից պակաս չեն տուժել իրենց ոչ հեռու անցյալի կառավարողների հրահրած պատերազմից։ Այդ ժողովուրդները ոչ մի լավ բան չեն կարող սպասել նոր պատերազմից և հազիվ թե համաձայնվեն թնդանոթի միս լինելու ամերիկյան միլիարդատերերի համար։

Ամերիկյան բլոկի ագրեսիվ քաղաքականությունն ամենից ավելի ակնհայտ կերպով մերկացվում է Միացյալ Նահանգների ռազմական ինտերվենցիայով Կորեայում։ ԱՄՆ-ի ներկայացուցիչները ձախողեցին ՍՍՌՄ-ի ու մյուս խաղաղասեր պետությունների բոլոր առաջարկները Կորեայում ամերիկյան ագրեսիան դադարեցնելու մասին, իսկ այժմ ամեն կերպ ձգձգում են Կեսոնում սկսված բանակցությունները։

Մենք համոզված ենք, որ քաջարի կորեական ժողովուրդը արժանավայել ելք կգտնի ամերիկացիների սարքած արյունալի կոնֆլիկտից և դրանով մի անգամ ևս աշխարհին ցույց կտա, որ ոչ մի ուժով չի կարելի ստրկացնել այն ժողովրդին, որը պայքարելու և հաղթանակելու կամք ունի։ (Ծափահարություններ):

ԱՄՆ-ը համառորեն փորձում է Միավորված Ազգերի Կազմակերպությունը դարձնել պատերազմի գործիք։ ԱՄՆ-ի ճնշման տակ նա իր դրոշակը տրամադրեց Կորեայում ամերիկյան ագրեսիան քողարկելու համար և ապա, ի խախտումն ժողովուրդների վաղեմի իրավունքների, ագրեսոր հայտարարեց Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային։ Ամբողջ աշխարհի ազնիվ մարդիկ չեն կարող չհամաձայնվել ընկեր Ստալինի այն խոսքերի արդարացիությանը, թե «ըստ բանի էու-

թյան, ՄԱԿ-ը այժմ հանդիսանում է ո՛չ այնքան հա-
մաշխարհային կազմակերպություն, որքան կազմակեր-
պություն ամերիկացիների համար, որը գործում է
հօգուտ ամերիկյան ագրեսորների»։

Վերջին ժամանակներս իմպերիալիզմի լագերում
ուժեղացել են պատերազմի նախապատրաստության
տեմպերը։ ԱՄՆ-ը ամեն կերպ ընդլայնում է ագրեսիվ
Ատլանտյան բլոկը, ճնշման, սպառնալիքների ու զա-
նազան խոստումների միջոցով նրա մեջ ներգրավելով
նոր երկրներ, այդ թվում նաև այնպիսիներին, որոնք
աշխարհագրական տեսակետից կապված չեն Ատլան-
տիկայի գոտու հետ, ստեղծում է նոր ռազմական բա-
զաներ աշխարհի բոլոր մասերում, տենդորեն ընդլայ-
նում է զենքի բոլոր տեսակների արտադրությունը և
թնդանոթի միս է փնտրում երկրագնդի բոլոր անկյուն-
ներում։

Անխնա ճնշվում են հակապատերազմական տրա-
մադրությունների ամենաչնչին դրսևորումները, ա-
ռանձնապես ԱՄՆ-ում, արմատավորվում ֆաշիստա-
կան-ոստիկանական մեթոդները պետական ապարատի
բոլոր օղակներում։ Գովաբանված «ամերիկյան դեմո-
կրատիայից» մնում են միայն խղճուկ փլատակներ։
Այդ բանը ստիպված է խոստովանելու նաև ինքը՝ ա-
մերիկյան մամուլը։ Վիսկոնսին նահանգի սենատոր
Ջեստեր Դեմպսին նորերս գրել է «Կեպիտալ թայմս»
թերթում.

«Կար ժամանակ, երբ մեզ զարմացնում էր գերմա-
նացիների ստորաքարշությունը, որոնք գտնվում էին
Հիտլերի և Գեբբելսի պրոպագանդայի ազդեցության
տակ։ Այժմ մենք գտնվում ենք է՛լ ավելի վատթար վի-
ճակում, քան մի ժամանակ գտնվում էին գերմանացի-
ները։ Մեզ մոտ գոյություն ունի մտքերի նկատմամբ
լիակատար վերահսկողություն, մենք գտնվում ենք
ռազմամոլների ու նրանց գրպարտչական կլիկի ձեռ-
քում»։ ԱՄՆ-ի պետական գործիչներն այնքան են տար-
վել, որ սկսել են ոստիկանական մեթոդները փո-
խադրել միջազգային ֆորումները։ Թերևս հիտլերյան



քաղաքական գեշեֆտմախերները կարող էին նախան-
ձել Տրումենի գլխավորությամբ ամերիկյան դիվանա-
գետների խարդախ պրիոմներին Սան-Ֆրանցիսկոյի
կոնֆերանսում։ (Ծափահարություններ)։

Միացյալ Նահանգներում ուժեղանում է պետական
ապարատի կլանումը կապիտալիստական մոնոպոլիա-
ների կողմից։ Եթե անցյալում երկրի փաստական տե-
րերը՝ ֆինանսական և արդյունաբերական մագնատնե-
րը իրենք մնում էին ստվերում, իրենց քաղաքական
կամակատարներին թողնելով իրենց շահերի պաշտ-
պանությունը քաղաքականության ասպարեզում, ապա
այժմ նրանք անմիջականորեն իրենց ձեռքն են վերց-
նում Միացյալ Նահանգների ադմինիստրատիվ-քաղա-
քական և դիվանագիտական ապարատը։ Հայտնի է, որ
կարևորագույն պետական գործերը վճռում է Մորգանի
խմբի գործարար Ջորջ Վիլսոնը, որը, առանց քաշվելու,
պետական ապարատի կարևորագույն լծակների մոտ
դնում է մարդիկ Մորգանի, Ռոկֆելլերի, Մելլոնի,
Դյուպոնի և ուրիշ միլիարդատերերի ամենախոշոր միա-
վորումներից, որոնք իրար հետ սերտորեն կապ-
ված են ոչ միայն տնտեսական, այլև ազգակցական
կապերով։ Նրանք անպատկառորեն երկրի էկոնոմիկան
օգտագործում են միլիարդատերերի շահերի օգտին։

Եվ ահա, այն պահին, երբ սեփական երկրում մո-
լեգնում է պլուտոկրատիան ու ոստիկանականությունը,
պրեզիդենտ Տրումենը հանդգնություն ունի անպատկա-
ռորեն շաղակրատելու Սովետական Միությունում «դեմո-
կրատիայի բացակայության» մասին, հենց այն Սո-
վետական Միությունում, որտեղ ինչպես հայտնի է, վա-
ղուց արդեն տապալված են ոստիկանականությունն ու
պլուտոկրատիան և որտեղ ամբողջ իշխանությունը
պատկանում է դեմոսին՝ ժողովրդին։ (Երկարատև ծա-
փահարություններ)։

Այսպիսիք են փաստերը, ընկերներ։ Դրանք ասում
են այն, որ ամերիկա-անգլիական բլոկը կանգնել է
նոր պատերազմի նախապատրաստման ու սանձազերծ-
ման ուղու վրա։

Այդ պայմաններում Սովետական Միությունը, հավատարիմ իր խաղաղասիրական քաղաքականությանը, անդուլ պայքար է մղում պատերազմը կանխելու և խաղաղությունը պահպանելու համար։ ՄԱԿ-ի ամեն մի Ասամբլեայում, Անվտանգության խորհրդի նիստերում, Արտաքին գործերի մինիստրների խորհրդի սեսիաներում Սովետական Միությունն ամեն կերպ մերկացնում է պատերազմի հրձիգների պլանները և մտցնում է կոնկրետ առաջարկներ, որոնք ուղղված են խաղաղության ապահովմանը, անշահախնդիր կերպով պաշտպանում է ժողովուրդների իրավունքներն ու սուվերենությունը։ Ամենքին հայտնի են վերջին ժամանակաշրջանի սովետական առաջարկները հինգ մեծ տերությունների միջև խաղաղության Պակտ կնքելու, մեկ տարվա ընթացքում մեծ տերությունների զինված ուժերը մեկ երրորդով կրճատելու, ատոմային զենքն արգելելու, Գերմանիայի հետ շուտափույթ կերպով հաշտության պայմանագիր կնքելու մասին՝ այնտեղից այնուհետև դուրս բերելով բոլոր օկուպացիոն զորքերը, Համագերմանական դեմոկրատական կառավարություն ստեղծելու մասին։ Խաղաղության համար Սովետական Միության պայքարի ամենացայտուն օրինակներից մեկը հանդիսանում է 1951 թվականի մարտի 12-ին ՍՍՌՄ Գերագույն Սովետի կողմից ընդունված խաղաղության պաշտպանության օրենքը, որի համաձայն պատերազմի պրոպագանդայում մեղավոր անձինք դատի են տրվում որպես քրեական ծանր հանցագործներ։

Մեր արտաքին քաղաքականությունը հենվում է Սովետական պետության հզորության վրա։ Միայն միամիտ քաղաքագետները կարող են նրա խաղաղասիրական բնույթը գնահատել որպես մեր անվստահությունը սեփական ուժերի նկատմամբ։ Սովետական մարդիկ բազմիցս աշխարհին ցույց են տվել, թե ինչպես նրանք կարողանում են պաշտպանել իրենց Հայրենիքը։ Կար ժամանակ, երբ մեր երիտասարդ, դեռևս չամրապնդված Սովետական ռեսպուբլիկան հարկադրված էր իր գոյությունը պաշտպանել բուրժուական տասնչորս պետու-



թյունների ռազմական արշավանքից, որոնց գլխավորում էին Անգլիայի, ԱՄՆ-ի, Ֆրանսիայի և Ճապոնիայի իմպերիալիստական շնաձկները։ Թշնամիները հարձակվում էին և՛ հյուսիսից ու հարավից, և՛ արևելքից ու արևմուտքից։ Երկիրն ապրում էր տնտեսական քայքայում, բանվորների համար չէր բավարարում հացը, բանակի համար՝ սպառազինությունը։ Ինտերվենտները համոզված էին, որ Սովետական պետության օրերը հաշված են, որ իրենք արագորեն նրան կխեղդեն ռազմական ուժով։ Սակայն գործը ուրիշ ընթացք ստացավ։ «Ամբողջ աշխարհը գիտե,— գրել է ընկեր Ստալինը այդ արշավանքի հետևանքների մասին,— որ և՛ անգլիական ինտերվենտները, և՛ նրանց դաշնակիցները խայտառակ կերպով շպրտվեցին երկրի սահմաններից դուրս մեր հաղթական բանակի կողմից։

Չի խանգարի, որ դրա մասին հիշեն նոր պատերազմի պարոնայք հրձիգները»։

Երբ մինչև ատամները զինված ֆաշիստական Գերմանիան, որի տրամադրության տակ այն ժամանակ գտնվում էր համարյա ամբողջ Եվրոպայի ռազմական պոտենցիալը, 1941 թվականի հունիսին ուխտադրուժ կերպով հարձակվեց մեր երկրի վրա, ապա ոչ միայն Արևմուտքում տարած ռազմական թեթև հաջողություններից արբեցած հիտլերյան գեներալները, այլև այն ժամանակվա մեր դաշնակիցների լագերում շատերը գտնում էին, որ Սովետական Բանակը կկարողանա դիմանալ միայն մի քանի շաբաթ, ամենաշատը մի քանի ամիս։ Այնինչ հենց Սովետական Միության ուժին ու հզորությանը հանդիպելով փշրվեց հիտլերյան Գերմանիայի ռազմական մեքենան։

Մենք խաղաղության համար հաստատակամորեն պայքարում ենք ոչ միայն այն պատճառով, որ մեզ հարկավոր չէ պատերազմ, այլև այն պատճառով, որ սովետական ժողովուրդը, որը Լենինի—Ստալինի դրոշի ներքո իր մոտ ստեղծել է ամենաարդարացի հասարակակարգը, ագրեսիվ պատերազմը համարում է ամենածանր հանցագործություն մարդկության դեմ, ամենամեծ

աղետը ամբողջ աշխարհի հասարակ մարդկանց համար։ Բայց եթե իմպերիալիստական գիշատիչները մեր ժողովրդի խաղաղասիրությունը մեկնաբանեն որպես նրա թուլության նշան, ապա նրանց սպասում է է՛լ ավելի խայտառակ ձախողում, քան այն, որին ենթարկվեցին նրանց նախորդները Սովետական պետության դեմ ուղղված ռազմական ավանտյուրաներում։ (Բուռն ծափահարություններ)։ Իտալացիները մի լավ առած ունեն. «Ով չի ուզում հավատալ դասերին, նա կսովորի սեփական կաշվի վրա զգալով»։ (Ծափահարություններ)։

ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարող շրջանները ճըգնում են համաշխարհային հասարակական կարծիքը խաբել՝ շաղակրատելով, թե իբր իրենք ստիպված են զինվելու Սովետական Միության կողմից ռազմական հարձակման սպառնալիքից դրդված։

Սովետական սպառնալիքի մասին, սովետական խաղաղասիրական առաջարկները անկեղծ չլինելու մասին ստահոդ խոսակցությունները նոր չեն։ Այդ խոսակցությունների քողի տակ առաջին համաշխարհային պատերազմից հետո Եվրոպայի և Ամերիկայի իմպերիալիստները զինում էին ֆաշիստական Գերմանիային, որի համար երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ շատ ժողովուրդներ ստիպված եղան արյունով վճարել։ Սակայն ամերիկա-անգլիական բլոկի հարգելի դիվանագետները իզուր են կարծում, թե ժողովուրդների հիշողությունը կարճ է, թե այդքան հեշտ է կեղծիքով մոլորեցնել նրանց։

Կառավարությունների քաղաքականության մասին աշխարհի ժողովուրդները դատում են ոչ թե խոսքի, այլ գործի հիման վրա։ Սովետական Միությունը երբեք չի խուսափել իր ստանձնած պայմանագրային պարտավորությունները ճշտությամբ կատարելուց։ Հենց այդ է խոսքի ու գործի միասնությունը պրակտիկայում։ ԱՄՆ-ի կառավարող շրջանների շուրթերին անվայել տարօրինակ է հնչում ուրիշներին անկեղծ չլինելու մեջ մեղադրելը այն ժամանակ, երբ նրանք իրենք կոպիտ կեր-



պով ոտնակոխ արին Թեհրանի, Յալթայի և Պոտսդամի կոնֆերանսների պատմական որոշումները։ Աշխարհի ժողովուրդներից չի կարելի թաքցնել, թե ում խոսքերն են, որ տարբերվում են գործերից։

Սովետական Միության նկատմամբ իրենց ագրեսիվ քաղաքականությունն արդարացնելու համար իմպերիալիստական պետությունների գործիչները զըրպարտչաբար սովետական մարդկանց են վերագրում երկու սիստեմների խաղաղ գոյակցության հնարավորության ժխտումը։

Դեռ Սովետական իշխանության առաջին տարիներին մեր պետության հիմնադիր Լենինը առաջ քաշեց խաղաղության և կապիտալիստական պետությունների հետ համաձայնությունների սկզբունքը։ «Մեր ուղին ճիշտ է,— ասում էր Լենինը,— մենք կողմնակից ենք խաղաղության և համաձայնության, բայց մենք դեմ ենք ստրկացմանը և համաձայնության ստրկացուցիչ պայմաններին»։ Լենինյան այս սկզբունքը դրված է Սովետական պետության քաղաքականության հիմքում։ «Կապիտալիստական երկրների հետ մեր հարաբերությունների հիմքը,— ասում է ընկեր Ստալինը,— կայանում է երկու հակադիր սիստեմների գոյակցությունը ընդունելու մեջ»։ Ընկեր Ստալինը սահմանեց նաև ՍՍՌՄ ու կապիտալիստական երկրների միջև համաձայնության ռեալ բազան։ «Արտահանությունը և ներմուծումը,—նշել է ընկեր Ստալինը,— առավել ամենահարմար հող են հանդիսանում այդպիսի համաձայնությունների համար։ Մեզ հարկավոր են՝ սարքավորում, հումք (օրինակ՝ բամբակ), կիսաֆաբրիկատներ (մետաղ և այլն), իսկ կապիտալիստներն այդ ապրանքների վաճառահանման կարիք ունեն։ Ահա ձեզ հող համաձայնության համար։ Կապիտալիստներին հարկավոր են՝ նավթ, փայտեղեն, հացամթերք, իսկ մեզ անհրաժեշտ է վաճառահանել այդ ապրանքները։ Ահա ձեզ հող համաձայնության համար»։

Այս ասվել է 1927 թվականին։ Այժմ մենք անհա-

մեծաւ ավելի շատ հնարավորություններ ունենք կապիտալիստական երկրների հետ գործարար կապերի համար։ Մենք դեմ չենք փոխադարձ շահավետության հիման վրա զգալիորեն ընդլայնելու գործարար համագործակցությունն ԱՄՆ-ի, Անգլիայի ու Ֆրանսիայի և մյուս բուրժուական երկրների հետ ինչպես Արևմուտքում, այնպես էլ Արևելքում։ Մեղքը Սովետական Միությանը չէ, եթե այդ երկրների կառավարող շրջանները, ի վնաս իրենց պետությունների շահերի, բռնել են ՍՍՌՄ-ի հետ տնտեսական կապերի քայքայման ու կծկման ուղին։

Երկու սիստեմների խաղաղ գոյակցությունը ենթադրում է նաև քաղաքական համաձայնություններ։ «Մենք խաղաղության քաղաքականություն ենք վարում,— ասել է ընկեր Ստալինը,— և մենք պատրաստ ենք փոխադարձ չհարձակման պակտեր ստորագրելու բուրժուական պետությունների հետ։ Մենք խաղաղության քաղաքականություն ենք վարում և մենք պատրաստ ենք զինաթափման վերաբերյալ համաձայնության դիմելու, ընդհուպ մինչև մշտական բանակների լիակատար ոչնչացումը, որի մասին մենք ամբողջ աշխարհի առաջ հայտարարել ենք դեռևս Ժենևայի կոնֆերանսում։ Ահա ձեզ հող դիվանագիտական գծով համաձայնության համար»։

Բայց համաձայնությունները չեն, որ հարկավոր են իմպերիալիստներին։ Նրանք վախենում են Սովետական Միության հետ համաձայնություններ կնքելուց, որովհետև այդպիսի համաձայնությունները կարող են ձախողել նրանց ագրեսիվ պլանները, ավելորդ կդարձնեն սպառազինությունների մրցավազքը, որը միլիարդների գերշահույթներ է տալիս նրանց։ Իմպերիալիստներին հարկավոր է պատերազմ։ Պատերազմը նրանց հարկավոր է ժողովուրդներին կողոպտելու և ստրկացնելու համար։ Այն հարկավոր է առաջին հերթին ամերիկյան մոնոպոլիստներին՝ միլիարդավոր գերշահույթներ ստանալու համար։



Պատերազմի նախապատրաստությունը գլխավորում են ամերիկյան իմպերիալիստները և այնուամենայնիվ Միացյալ Նահանգների գործիչները չեն դադարում իրենց իբր խաղաղ դիտավորությունների մասին շաղակրատելուց։ Նրանք, տեսնում եք, դեմ չեն պահպանել «խաղաղությունը», բայց այն «պայմաններով», որոնք կթելադրվեն Միացյալ Նահանգների կողմից։ Իսկ ինչպիսի՞ք են այդ «պայմանները»։ Աշխարհի ժողովուրդները պետք է ծնկի գան ամերիկյան կապիտալի առաջ, հրաժարվեն իրենց ազգային անկախությունից, ընդունեն կառավարման այն ձևը, ինչպիսին կթելադրեն ամերիկյան «խորհրդականները», իրենց մոտ մտցնեն «ամերիկյան ապրելակերպ», զարգացնեն տնտեսության միայն այն ճյուղերը և միայն այն չափերով, որ հաճելի և շահավետ են ամերիկյան մոնոպոլիստներին։ Մի խոսքով, ժողովուրդները պետք է հրաժարվեն իրենց քաղաքական սուվերենությունից ու տնտեսական ինքնուրույնությունից, իրենց կուլտուրական և այլ շահերից ու դառնան ամերիկյան նորաթուխ կայսրության հպատակները։ Եվ դա կոչվում է խաղաղության «պահպանում»։ Հիրավի, ինչու պետք է ամերիկյան իմպերիալիզմի պարագլուխները ռիսկ անեն պատերազմելու, եթե միայն սպառնալիքների ու շանտաժի միջոցով նրանց հաջողվեր իրենց դիկտատին ենթարկել ժողովուրդներին։ Ինչպես հայտնի է, դիվահար Հիտլերը ևս համաձայն էր այդպիսի «խաղաղության պայմաններին»։ Բայց չէ որ հենց այդ իմպերիալիստական «խաղաղության պայմաններն» էին, որ հանգեցրին երկրորդ համաշխարհային պատերազմին։ Ակնհայտ է, որ Տրումենը, առաջ քաշելով համանման «խաղաղության պայմաններ», կանգնում է Հիտլերի ուղու վրա և նպատակ ունի ժողովուրդներին քաշել երրորդ համաշխարհային պատերազմի մեջ։

Ամեն մի ազնիվ մարդու մոտ օրինական հարց է ծագում. ի՞նչ հիման վրա ԱՄՆ-ը բացառիկ դիրքի հավակնություն ունի մյուս երկրների շարքում։ Մի՞թե աշխարհի ժողովուրդներն իրավահավասար չեն։ Գուցե այն

հիման վրա, որ ԱՄՆ-ը շատ ոսկի ունի, որը ձեռք է բերել միլիոնների արյան ու տառապանքների գնով և որը պիտանի է միայն կաշառելու համար։ Բայց ժողովուրդները չեն վաճառում իրենց ազատությունը։ Թող պարոնայք ամերիկյան իմպերիալիստներն իրենց չհանգստացնեն այն մտքով, թե քանի որ իրենց հաջողվել է ոսկով գնել բուրժուական երկրների որոշ կառավարողների, ապա դրանով իսկ նրանք գնել են նաև այդ երկրների ժողովուրդներին։

ԱՄՆ-ի գործիչներին չի հաջողվի թաքցնել, որ սպառազինությունների մրցավազքն իրենց հարկավոր է, որպեսզի ուժի սպառնալիքով ուրիշ ժողովուրդներին թելադրեն իրենց իմպերիալիստական, զավթողական «խաղաղության պայմանները»։

Ինչպես տեսնում եք, այդ պարոններն ամենուրեք շաղակրատում են խաղաղության մասին և միևնույն ժամանակ պատրաստում են նոր պատերազմ, բացահայտորեն նիզակ են ճոճում և պարծենկոտությամբ ի ցույց են դնում ինչ-որ «ֆանտաստիկ արկեր»։

Թող նրանք չկարծեն, թե դրանով կվախեցնեն որևէ մեկին։ Իսկ ինչ վերաբերում է սովետական ժողովրդին, ապա միայն այն մարդիկ, ովքեր վերջնականապես կորցրել են պատմական իրադարձությունները ողջամիտ կերպով գնահատելու ընդունակությունը, դեռ կարող են կարծել, թե սովետական ժողովրդին կարելի է վախեցնել սպառնալիքներով։ Եթե մինչև այժմ մեր երկրի վրա իմպերիալիստական պետությունների ամեն մի ռազմական հարձակում միշտ ավարտվել է խայտառակ ձախողումով, ապա այժմ մեր պետությունն է՛լ ավելի ուժեղ է և հզոր, մեր ժողովուրդն է՛լ ավելի համախմբված ու վստահ իր ուժերին։ (Ծափահարություններ)։ Թող ռազմական հիստերիայով արբեցած պարոններն իմանան, որ եթե նրանք մեր երկրի վրա հարձակվեն, ապա սովետական ժողովուրդը կկարողանա նրանց դիմավորել այնպես, որպեսզի նրանք ընդմիշտ կորցնեն մեր սոցիալիստական Հայրենիքի ազատության ու անկախության



դեմ խելացնոր ոտնձգություններ կատարելու ցանկությունը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Եթե որևէ մեկը պետք է վախենա նոր համաշխարհային պատերազմի հետևանքներից, ապա դրանցից ամենից առաջ պետք է վախենան Ամերիկայի և մյուս բուրժուական երկրների կապիտալիստները, որովհետև նոր պատերազմը ժողովուրդների առաջ կդնի կապիտալիստական կարգի վնասակարության հարցը, այն կարգի, որը չի կարող ապրել առանց պատերազմի, և այդ արյունալի կարգը ուրիշ, սոցիալիստական կարգով փոխարինելու անհրաժեշտության հարցը (Երկարատև ծափահարություններ) նույնպես, ինչպես այդ տեղի ունեցավ Ռուսաստանում՝ առաջին համաշխարհային պատերազմից հետո, ինչպես այդ տեղի ունեցավ Եվրոպայի և Ասիայի ժողովրդա-դեմոկրատական երկրներում՝ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։

Առաջին հայացքից կարող է թվալ, որ իմպերիալիզմի լագերը իրենից ներկայացնում է ագրեսիվ ուժերի հզոր միավորում։ Իհարկե այդ ուժերը չի կարելի թերագնահատել։ Սակայն խաղաղության լագերը շատ ավելի ուժեղ է պատերազմի լագերից։ Այն ժամանակ, երբ խաղաղության լագերը համախմբված է նպատակի միասնությամբ, պատերազմի լագերում նկատվում է շահերի զգալի տարամիտում, իսկ շատ երկրների այդ լագերի մեջ են ներգրավել՝ օգտագործելով ԱՄՆ-ից դրանց ունեցած տնտեսական կախումը, որը տխրահռչակ «Մարշալի պլանի» հետևանքն է։

Իմպերիալիզմի ճակատի արտաքին միասնությունը չի կարող թաքցնել նրա ներքին խոր հակասությունները, որոնք կապված են գլխավորապես հումքային ռեսուրսների, վաճառահանման շուկաների և կապիտալի գործադրման ոլորտների համար մղվող պայքարի հետ։ Այդ հակասությունները խճճվում են, ընդգրկելով իմպերիալիզմի լագերի բոլոր երկրները, բայց դրանցից գլխավորները մնում են ԱՄՆ-ի և Անգլիայի միջև եղած հակասություններն ինչպես Եվրոպայում, այնպես էլ Ասիայում։

Հազիվ թե կարելի է կասկածել այն բանում, որ իմպերիալիստների լագերում եղած հակասությունները գնալով ավելի կխորանան։

Է՛լ ավելի լուրջ գործոն է հանդիսանում իմպերիալիզմի թիկունքի թուլությունը։ Որքան էլ իմպերիալիստները փորձեն կեղծիքով մոլորեցնել ժողովուրդներին, որքան էլ աջ սոցիալիստները՝ իմպերիալիզմի այդ եռանդուն ծառաները վարժվեն աշխատավորների շահերի դավաճանության մեջ, փաստը մնում է փաստ, որ իմպերիալիզմի բուն լագերում, իմպերիալիստների թիկունքում կան խաղաղության կողմնակիցների պատկառելի ուժեր ի դեմս ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միլիոնավոր ազնիվ մարդկանց, որոնք խաղաղության պահպանման շահերը ավելի բարձր են դասում կապիտալի ամեն տեսակ գրոշային ողորմություններից։ Մասսաների հակապատերազմական տրամադրությունները չեն կարող չուժեղանալ այն կապակցությամբ, որ պատերազմի նախապատրաստության վիթխարի ծախսերը որպես ծանր բեռ ընկնում են աշխատավորների ուսերին։

Իմպերիալիզմի թիկունքի թուլությունն արտահայտվում է նաև գաղութային ու կախյալ երկրներում ազգային-ազատագրական շարժման աճի մեջ։ Իր ազատագրության համար հերոսաբար մարտնչում է Վյետնամի ժողովուրդը, պայքարում են Ֆիլիպինների, Բիրմայի և Մալայայի ժողովուրդները, զենքը ցած չի դրել Ինդոնեզիայի ժողովուրդը, ուժեղանում են իմպերիալիզմին դիմադրող ուժերը Մերձավոր ու Միջին Արևելքի երկրներում, Հյուսիսային և Հարավային Աֆրիկայի երկրներում։

Ցնցումների մշտական սպառնալիքի տակ է գտնըվում նաև առաջատար իմպերիալիստական երկրների, ամենից առաջ ԱՄՆ-ի էկոնոմիկան։ Միացյալ Նահանգներում, Անգլիայում և կապիտալիստական այլ երկրներում նկատվող էկոնոմիկայի ռազմականացումը՝ ռազմական արդյունաբերության, ինչպես նաև այդ արդյունաբերությանն սպասարկող ճյուղերի անչափ ուռճացու-



մը ի հաշիվ քաղաքացիական սպառման առարկաների արտադրության կրճատման, չի կարող շուտով չհանգեցնել տնտեսական կրախի։ Մենք արդեն չենք խոսում ԱՄՆ-ում միլիոնավոր գործազուրկների առկայության մասին։

Այսպիսի տեսք ունի իմպերիալիզմի և պատերազմի լագերը։

Այլ դրություն ենք մենք տեսնում դեմոկրատիայի և խաղաղության լագերում։ Ամեն տեսակ ներքին հակասություններից ազատ այդ լագերի ուժերն օրավուր աճում են և ամրապնդվում։ Ես արդեն խոսեցի Սովետական Միության հաջողությունների մասին, որը ներկայացնում է դեմոկրատիայի և խաղաղության լագերի գլխավոր, առաջատար ուժը։ Հաջողությունից հաջողություն են ընթանում նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրները։ Կարճ ժամկետում, նոր հասարակական կարգի առավելությունների շնորհիվ, լիկվիդացնելով պատերազմի ծանր հետևանքները, այդ երկրների ժողովուրդներն արագ տեմպերով զարգացնում են իրենց էկոնոմիկան։ Մինչև ընթացիկ տարվա առաջին կեսի վերջը արդյունաբերության նախապատերազմյան մակարդակը գերազանցվեց Լեհաստանում և Հունգարիայում ավելի քան 2 և կես անգամ, Բուլղարիայում՝ ավելի քան 3 անգամ, Չեխոսլովակիայում՝ ավելի քան մեկ ու կես անգամ, Ռումինիայում՝ ավելի քան 2 անգամ, իսկ Ալբանիայում՝ ավելի քան 4 անգամ։ Ինչպես և մեր երկրում, այդ երկրներում արդյունաբերության զարգացումը ծառայում է աշխատավորների պահանջների բավարարմանը, հետագա խաղաղ զարգացմանը։ Էկոնոմիկայի աճման հետ միասին փոխվում է նաև այդ երկրների կուլտուրական տեսքը, ծաղկում են գիտությունը, գրականությունն ու արվեստը, աճում են նոր մարդիկ, որոնք հասկանում են իրենց ժողովուրդների կենսական շահերը և ընդունակ են պաշտպանելու այդ շահերը։ Վերջնականապես ամրապնդվել է նոր հասարակական-քաղաքական կարգը, որն ապահովում է այդ երկրների անշեղ առաջընթացը սոցիալիզմի ուղիով։

Մեծ հաջողություններ է ձեռք բերել Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, որը խաղաղության համար մղվող պայքարում գրավում է առաջատար տեղերից մեկը։ Իր գոյության կարճ ժամկետում Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, Չինաստանի Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, կարողացավ ամրապնդել ժողովրդական դեմոկրատիայի դիկտատուրայի կարգը և լուծել մի շարք կարևոր տնտեսական-քաղաքական պրոբլեմներ՝ կապիտալիստական աշխարհից տնտեսական լիակատար անկախության համար մղված պայքարում, երկրի ինդուստրացման և կուլտուրայի վերելքի համար մղվող պայքարում։

Խաղաղ շինարարությունը հաջողությամբ զարգացնում է Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, որն ամուր կերպով իր տեղն է գրավել դեմոկրատիայի և խաղաղության լագերում։ Նա հաստատակամորեն պայքարում է ամբողջ գերմանական ժողովրդի կենսական շահերի համար, անկախ, միասնական, դեմոկրատական, խաղաղասեր Գերմանիայի համար, արդարացի հաշտության պայմանագիր կնքելու համար, որն ապահովի գերմանական ժողովրդի արժանի տեղը աշխարհի ժողովուրդների շարքում։

Ի տարբերություն իմպերիալիստական լագերի երկրների, որոնք վարում են և չեն կարող չվարել կատաղի փոխադարձ մրցակցություն, դեմոկրատական լագերի երկրները զարգացնում են իրենց էկոնոմիկան սերտ համագործակցության և փոխադարձ օգնության բազայի վրա։

Այսպիսով, ինչպես քաղաքական-քաղաքական, այնպես էլ տնտեսական տեսակետից դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերը իրենից ներկայացնում է միասնական անխորտակելի ուժ։ Այդ լագերի ուժը մեծանում է նաև նրանով, որ նա պաշտպանում է ժողովուրդների ազատության և անկախության պաշտպանության արդար գործը։ Իսկ դա նշանակում է, որ եթե իմպերիալիստական լագերի պարագլուխներն այնուամենայնիվ համարձակ-



վեն սանձազերծել պատերազմ, ապա տարակույս չի կարող լինել, որ դա կավարտվի հենց իմպերիալիզմի կրախով։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Արդիականության մեծագույն ժողովրդական շարժումներից մեկը խաղաղության շարժումն է։ Ջնայած իմպերիալիստական պետությունների կառավարող շրջանների կողմից հարուցվող ամեն տեսակ արգելքներին և խաղաղության կողմնակիցների հալածանքներին, խաղաղության շարժումը չտեսնված թափ է ստացել, ընդգրկելով աշխարհի բոլոր երկրները և բնակչության բոլոր խավերը, անկախ քաղաքական, կրոնական և այլ համոզմունքներից։ Ամբողջ աշխարհում խաղաղության մարտիկներին ոգեշնչում են խաղաղության մեծ դրոշակակիր ընկեր Ստալինի խոսքերը՝ «Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի, եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և դա պաշտպանեն մինչև վերջ»։ (Ծափահարություններ)։

Խաղաղության համար մղվող պայքարի նախաձեռնողներն ու ղեկավար ուժը բոլոր երկրներում հանդիսանում են կոմունիստական պարտիաները։ Իրենց անվեհերության և աշխատավորների կենսական շահերի համար, խաղաղության պաշտպանության ու ժողովուրդների սուվերենության համար մղվող անձնուրաց պայքարի շնորհիվ կոմունիստական պարտիաները նվաճել են ժողովրդական լայն մասսաների վստահությունը։

***

Ընկերնե՛ր։ Մեր երկիրը Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի 34-րդ տարեդարձին նոր քայլ կատարեց կոմունիզմի ճանապարհին։ Մեր ձեռք բերած հաջողությունները մեկ անգամ ևս հաստատում են, որ բոլշևիկյան պարտիայի քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է, որն ապահովում է մեր Հայրենիքի հզորության անշեղ աճը, աշխատա-

վորների բարեկեցության աճը։ (Ծափահարություններ)։ Կոմունիստական շինարարության հոյակապ ծրագրի իրագործման համար մղվող պայքարում սովետական ժողովուրդը է՛լ ավելի սերտորեն համախմբվեց հարազատ կոմունիստական պարտիայի շուրջը, մեր հաղթանակների ոգեշնչող ու կազմակերպիչ մեծ Ստալինի շուրջը։ (Բուռն ծափահարություններ)։

Գիտակցելով իր ուժն ու իր ուղու ճշտությունը, սովետական ժողովուրդը անհողդողդ հանգստությամբ և ապագայի նկատմամբ հավատով լի շարունակում է մեծ, ստեղծարար աշխատանքը։ Աշխարհում ոչ մի ուժ չի կարող կասեցնել սովետական ժողովրդի հաղթական առաջընթացը դեպի կոմունիզմի վերջնական հաղթանակը։ (Ծափահարություններ)։

Կեցցե՛ Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի մեծ, անպարտելի դրոշը։ (Ծափահարություններ)։

Կեցցե՛ մեր հզոր Հայրենիքը՝ ազատության և խաղաղության անխորտակելի պատվարը։ (Ծափահարություններ)։

Կեցցե՛ Լենինի—Ստալինի պարտիան՝ մեր փառապանծ բոլշևիկյան պարտիան։ (Երկարատև ծափահարություններ)։

Հանո՛ւն խաղաղության ու դեմոկրատիայի հաղթանակի ամբողջ աշխարհում։ (Երկարատև, բուռն ծափահարություններ։ Մի քանի րոպե տևում է օվացիան ի պատիվ սովետական ժողովրդի պատմական, վիթխարի հաղթանակների կազմակերպիչ ու ոգեշնչող, մարդկության լուսավոր հանճար, խաղաղության դրոշակակիր, մեծ առաջնորդ և ուսուցիչ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ)։

---

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով մեր ռեսպուբլիկայի ժողովրդական դատարանների ընտրությունները նշանակված են 1951 թվականի դեկտեմբերի 16-ին՝ կիրակի օրը։

Նախապատրաստվելով ժողովրդական դատարանների ընտրություններին, մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը հանդես է բերում աշխատանքային խանդավառություն, քաղաքական բարձր ակտիվություն՝ տարեկան պլանները ժամկետից շուտ կատարելու, մեր սոցիալիստական Հայրենիքը է՛լ ավելի հզորացնելու և դրանով իսկ մինչև վերջը ապահովելու իր ակտիվ մասնակցությունը խաղաղության համար ծավալվող հզոր շարժմանը։

Ժողովրդական դատարանների ընտրությունները լավ նախապատրաստելու և հաջող անցկացնելու համար, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, պատասխանատու և շնորհակալ դեր ունեն մեր ագիտատորները։

Արտադրական ձեռնարկություններում, հիմնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, ագիտատորները զրույցների ընթացքում պետք է վեր հանեն սովետական արդարադատության օրգանների, այդ թվում ժողովրդական դատարանների վճռական դերը ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակարգի կառուցման, հանրային սոցիալիստական սեփականու-

թյան՝ սովետական կարգերի սրբազան ու անձեռնմխելի հիմքի պահպանության գործում։

Ագիտատորները զրույցների ժամանակ փաստական հարուստ նյութերով պետք է լուսաբանեն այն իրողությունը, որ մեր արդարադատության օրգանները պահպանում են ՍՍՌՄ, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների կոնստիտուցիաներով շնորհված ՍՍՌՄ քաղաքացիների բոլոր իրավունքները։ Պարզաբանեն, որ մեզ մոտ ժողովրդական դատարանները կոչված են կատարում են իրենց այդ բարձր դերը, սովետական քաղաքացիների կողմից պետական օրենքները ճիշտ և ժամանակին կատարելու, սոցիալիստական համակեցության օրենքները հարգելու ուղղությամբ։

Ագիտատորների խնդիրն է աշխատավորների առջև բացահայտելու սովետական դատարանի արմատական տարբերությունը բուրժուական դատարանից։ Պարզաբանել, որ սովետական դատարանը ընտրվում է ժողովրդի կողմից և պաշտպանում է ժողովրդի ու պետության միասնական շահերը։ Դրան հակառակ՝ բուրժուական դատարանը պաշտպանում է շահագործող դասակարգերի շահերը, հանդիսանում է բուրժուազիայի դասակարգային տիրապետության զենք՝ ընդդեմ աշխատավորների շահերի։

Ագիտացիոն զրույցների ժամանակ պարզաբանել, որ ՍՍՌՄ-ում, ինչպես բոլոր ընտրությունների ժամանակ, այնպես էլ այս անգամ, ժողովրդական դատավորների և ատենակալների ընտրությունները կատարվելու են ամենադեմոկրատական սկզբունքներով՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ, աշխարհում ամենադեմոկրատական Ստալինյան Կոնստիտուցիայի սրբագործված օրենքներով։

Ագիտատորների միջոցով ռեսպուբլիկայի բոլոր քաղաքացիները պետք է գիտենան ժողովրդական դատարանների ընտրությունների Կանոնադրությունը, ի-



րենց իրավունքները։ Աշխատավորներին պետք է պարզաբանել, որ ժողովրդական դատարանների ընտրություններին մասնակցելու իրավունք ունեն 18 տարին լրացրած այն բոլոր քաղաքացիները, որոնք ընտրական իրավունք ունեն և ցուցակներ կազմելու ժամանակ ապրում են տվյալ Սովետի տերիտորիայում, անկախ ռասսայական ու ազգային պատկանելիությունից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից։ Բոլոր ընտրողները պետք է գիտենան, որ ժողովրդական դատավոր և ժողովրդական ատենակալ կարող են ընտրվել այն բոլոր քաղաքացիները, որոնք օգտվում են ընտրական իրավունքից և ընտրությունների օրը լրացել է նրանց 23 տարին։

Զրույցների ընթացքում ունկնդիրներին տեղեկացնել, որ ընտրությունների Կանոնադրության համաձայն, ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուներ առաջադրելու իրավունք ունեն բոլոր հասարակական կազմակերպությունները և աշխատավորների ընկերությունները՝ կոմունիստական պարտիական կազմակերպությունները, պրոֆեսիոնալ միությունները, կոոպերատիվ կազմակերպությունները, երիտասարդական կազմակերպությունները և կուլտուրական ընկերությունները, ինչպես նաև բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները՝ ձեռնարկություններում և հիմնարկներում, զինծառայողները՝ զինվորական մասերում, գյուղացիների ընդհանուր ժողովները՝ կոլտնտեսություններում և գյուղերում, սովխոզների բանվորները և ծառայողները՝ սովխոզներում։

Ագիտատորների խնդիրն է աշխատավորներին պարզաբանել, որ ինչպես միշտ, այս անգամ էլ մեր պարտիական կազմակերպությունները դեպի ընտրությունները կգնան սերտորեն համախմբված անպարտիականների հետ, առաջադրելով ընդհանուր թեկնածուներ։

Քաղաքական-մասսայական աշխատանքի միջոցով

պետք է հասնել այն բանին, որ աշխատավորական ամենալայն մասսաները ներգրավվեն ընտրությունների նախապատրաստական աշխատանքներում, գործոն մասնակցություն ունենան ընտրությունները կազմակերպված անցկացնելու համար։

Ժողովրդական դատարանների ընտրությունների նախապատրաստական աշխատանքների հետ, մեր ամբողջ երկրում մեկ ծավալվում է սոցիալիստական մրցությունը՝ 1951 թվականի պլանները ժամկետից շուտ կատարելու համար, հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ ստորագրություններ հավաքելու, խաղաղության գործն ամրապնդելու համաժողովրդական շարժումը։

Ժողովրդական դատարանների ընտրությունների շուրջը տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը պետք է սերտորեն առնչվի Սովետական Միությունում կոմունիստական շինարարության բնագավառում սովետական ժողովուրդների ձեռք բերած վիթխարի հաջողությունների լուսաբանման հետ։

Ագիտատորները զրույցների ժամանակ աշխատավորներին պետք է ծանոթացնեն Հայաստանում սովետական կարգերի հաստատման անցած տարիների ընթացքում ձեռք բերած տնտեսական-քաղաքական հաջողությունների հարուստ փաստերի հետ։

Ժողովրդական դատարանների ընտրությունների շրջանում լայնորեն պետք է լուսաբանել Սովետական Միության դերը ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանության ու ամրապնդման, սոցիալիզմի ու դեմոկրատիայի լագերի ուժերի կազմակերպման ու գլխավորման, պատերազմի անգլո-ամերիկյան հրձիգների նենգ պլանների բացահայտման ու ձախողման գործում։



Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, ագիտատորները պետք է գլխավորեն սովետական մարդկանց աշխատանքային խանդավառությունը, քաղաքական բարձր ակտիվությունը, կազմակերպեն աշխատավորության ուժերը ձեռնարկության, հիմնարկության, կոլտնտեսության, սովխոզի առջև դրված խնդիրները ժամանակին և անթերի կատարելու համար։

Ժողովրդական դատարանների ընտրությունների շրջանում, քաղաքական-մասսայական ամբողջ աշխատանքը պետք է գնա կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկը է՛լ ավելի ամրապնդելու նշանաբանով։

Սովետական ժողովուրդը գնում է դեպի ժողովրդական դատարանների ընտրությունները, հանդես բերելով սերտ համախմբվածություն բոլշևիկների պարտիայի, Սովետական Կառավարության շուրջը, ցուցադրելով իր անհուն սերն ու նվիրվածությունը մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի նկատմամբ։

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ-ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՄԱՆ ՇՐՋԱՆՈՒՄ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*I*

## ՍՍՌՄ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

*1. Ընկեր Ստալինը հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիայի ստեղծողն է։*

*2. Ստալինյան Կոնստիտուցիան ՍՍՌՄ-ի Հիմնական Օրենքն է։*

*3. Ստալինյան Կոնստիտուցիան ամենադեմոկրատական Կոնստիտուցիան է աշխարհում։*

*4. Ստալինյան Կոնստիտուցիայի հիմնական առանձնահատկությունները։*

*5. Սովետական Միությունը բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն է։*

*6. Աշխատավորների դեպուտատների Սովետները ՍՍՌՄ քաղաքական հիմքն են։*

*7. Տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը ՍՍՌՄ տնտեսական հիմքն են։*

*8. ՍՍՌՄ ընտրական օրենքն ամենադեմոկրատական օրենքն է աշխարհում։*

*9. Բուրժուական դեմոկրատիայի և սովետական դեմոկրատիայի արմատական տարբերությունները։*

*10. Սովետական ընտրական սիստեմը՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։*



*11. ՍՍՌՄ քաղաքացիների աշխատանքի իրավունքը, հանգստի իրավունքը, ծերության և ժամանակավորապես աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովման իրավունքը, կրթության իրավունքը։*

*12. ՍՍՌՄ-ում կանայք և տղամարդիկ իրավահավասար են։*

*13. ՍՍՌՄ քաղաքացիների հիմնական պարտականությունները։*

*14. Ընդհանուր զինվորական պարտականությունն օրենք է հանդիսանում։*

*15. Սոցիալիստական Հայրենիքի պաշտպանությունը ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտականությունն է։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— «ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի մասին»։ *Զեկուցում Սովետների Համամիութենական 8-րդ Արտակարգ համագումարում, 1936 թ. նոյեմբերի 29-ին։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում։ *1937 թ. դեկտեմբերի 11-ին և 1946 թ. փետրվարի 9-ին։*

ՍՍՌՄ Կոնստիտուցիան։

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիան։

ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց։ *էջ 467—482։ Հայպետհրատ. 1948 թ.։*

*II*

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՈՐՊԵՍ ԿԱՐԵՎՈՐ ՄԻՋՈՑ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՀԱՄԱՐ

*1. Սովետական դատարանի դերն ու նշանակությունը։*

*2. Սովետական դատարանը պայքարում է սոցիալիստական սեփականության պաշտպանության և հետագա ամրապնդման համար։*

*3. Սովետական դատարանի արմատական տարբերությունը բուրժուական դատարանից։*

*4. Սովետական դատարանի դաստիարակչական դերը և նրա*

*պայքարը Սովետական պետության, ընտանիքի ու կոմունիստական բարոյականության ամրապնդման համար։*

*5. Ժողովրդական լայն մասսաների ակտիվ մասնակցությունը ժողովրդական դատարանների առաջիկա ընտրություններին՝ դատական օրգանների հետագա աշխատանքների բարելավման լավագույն երաշխիքն է։*

*6. Ժողովրդական դատարանների ընտրություններն անցկացնենք սովետական ժողովրդի բարոյական-քաղաքական միասնության հետագա ամրապնդման և սովետական մարդկանց աշխատանքային ու քաղաքական ակտիվության բարձրացման նշանաբանի տակ։*

*7. Արդարադատության օրգանները պահպանում են ՍՍՌՄ հասարակական և քաղաքական կարգը, տնտեսության սոցիալիստական սիստեմը և հանրային սոցիալիստական սեփականությունը՝ Հայրենիքի հարստության ու հզորության աղբյուրը, բոլոր աշխատավորների ունևոր ու կուլտուրական կյանքի աղբյուրը։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— «Լենինիզմի հարցեր» *11-րդ հրատ., Հայպետհրատ, 1940 թ., էջ 481—647, 729—787։*

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ.— Ճառ ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում։ *Հայպետհրատ, 1939 թ.։*

ՍՍՌՄ-ի Կոնստիտուցիան։ *9-րդ գլուխ։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1947 թվի հունիսի 4-ի Հրամանագրերը։


*III*

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

*1. Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների սիստեմը, ընտրողների ցուցակները։*

*2. Ժողովրդական դատարանների ընտրությունների ընտրական օկրուգները և ընտրական կետերը, ընտրությունների կազմակերպումը։*

*3. Ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուներ առաջադրելու կարգը։*



*4. Ժողովրդական դատարանների ընտրությունների քվեարկության կարգը, ընտրությունների արդյունքների որոշումը։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Օրենք՝ ՍՍՌՄ, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների դատարանակազմության մասին։ *Հայպետհրատ, 1938 թ.։*

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը՝ «Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների օրվա մասին»։ *«Ս. Հ.» 1951 թ. հոկտեմբերի 28։*

Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների Կանոնադրությունը։ *«Ս. Հ.» 1951 թ. հոկտեմբերի 30։*


---


Պատ. խմբագրի տեղակալ՝
Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

